Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

Հ Կ (բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 6 (84)

Հավելված ԽՍՀ ԺԿԽ-ին կից «ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
Հրատարակչություն ՅԵՐԵՎԱՆ—1940 թ.

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 6 (84)

Հայկական ԽՍՀ ԺԿԽ-ին կից «ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
Հրատարակչություն ԵՐԵՎԱՆ—1940 թ.



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ԵՋ



# ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՅԵՎ ՖԻՆԼԱՆԴԻԱՅԻ ՄԻՋԵՎ ՀԱՇՏՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆԱԳԻՐ ԿՆՔՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Մարտի 7—12-ը Մոսկվայում բանակցություններ էին տեղի ունենում մեկ կողմից ԽՍՀՄ լիազորների— ԽՍՀՄ Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի Նախագահ և Արտաքին Գործերի Ժողովրդական Կոմիսար ընկ. Վ. Մ. Մոլոտովի, ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահության անդամ ընկ Ա. Ա. Ժդանովի ու բրիգադայի հրամանատար ընկ. Ա. Մ. Վասիլևսկու և մյուս կողմից՝ Ֆինլանդական Հանրապետության լիազորների— Ֆինլանդիայի Մինիստրների Խորհրդի նախագահ պ-րն Ռ. Ռյուտիի, մինիստր Յու. Կ. Պաասիկիվիի, գեներալ Կ. Ռ. Վալդենի ու պրոֆեսոր Վ. Վոյոնմաայի միջև, ռազմական գործողությունները դադարեցնելու և ԽՍՀՄ-ի ու Ֆինլանդիայի միջև հաշտության պայմանագիր կնքելու հարցի վերաբերյալ:*

Բանակցությունները ավարտվեցին 1940 թվի մարտի 12-ին Խորհրդային Միության և Ֆինլանդիայի միջև հաշտության պայմանագրի ստորագրումով։

Հաշտության պայմանագրի և նրան կից արձանագրության տեքստերը բերվում են ստորև։

# ՀԱՇՏՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆԱԳԻՐ

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ՅԵՎ ՖԻՆԼԱՆԴԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՄԻՋԵՎ

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահությունը՝ մեկ կողմից, և Ֆինլանդական Հանրապետության Պրեզիդենտը՝ մյուս կողմից, ղեկավարվելով յերկու յերկրների միջև ծագած ռազմական գործողությունները դադարեցնելու և փոխադարձ ամուր, խաղաղ հարաբերություններ ստեղծելու ցանկությամբ,

համոզված լինելով, որ պայմանավորվող յերկու կողմերի շահերին եվ համապատաս-



խանում է փոխադարձ անվտանգության ապահովման, այդ թվում Լենինգրադ ու Մուրմանսկ քաղաքների, ինչպես նաև Մուրմանսկի յերկաթուղու անվտանգության ապահովման ճշգրիտ պայմանների սահմանումը,

անհրաժեշտ գտան այդ նպատակներով կնքել հաշտության պայմանագիր և վորպես իրենց լիազորներ նշանակեցին՝

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահությունը՝

ԽՍՀՄ Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի Նախագահ և Արտաքին Գործերի Ժողովրդական Կոմիսար Վյաչեսլավ Միխայլովիչ Մոլոտովին,

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահության անդամ Անդրեյ Ալեքսանդրովիչ Ժդանովին,

Բրիգադայի հրամանատար Ալեքսանդր Միխայլովիչ Վասիլևսկուն,

Ֆինլանդական Հանրապետության Պրեզիդենտը՝

Ֆինլանդական Հանրապետության Մինիստրների Խորհրդի նախագահ Ռիստո Ռյուտիին,

Մինիստր Յուխո Կուստի Պաասիկիվիին,

գեներալ Կարլ Ռուդոլֆ Վալդենին,

պրոֆեսոր Վյայնե Վոյոնմաանին։

Հիշյալ լիազորները, փոխադարձաբար ներկայացնելով իրենց լիազորությունները, վորոնք ճանաչվեցին պատշաճ ձևով և լիակատար կանոնավոր կազմված, համաձայնվեցին ներքոհիշյալի մասին.

## ՀՈԴՎԱԾ I

Ռազմական գործողությունները ՍՍՀՄ-ի և Ֆինլանդիայի միջև դադարեցվում են անհապաղ, սույն պայմանագրին կցվող արձանագրությամբ նախատեսված կարգով։

## ՀՈԴՎԱԾ II

Պետական սահմանը ՍՍՀՄ-ի և Ֆինլանդական Հանրապետության միջև սահմանվում է նոր գծով, ըստ վորի՝ ՍՍՀՄ տերիտորիայի կազմի մեջ մտցվում են— ամբողջ Կարելական պարանոցը՝ Վիբորգ (Վիիպուրի) քաղաքով և Վիբորգյան ծովածոցը՝ կղզիներով, Լադոգա լճի արևմտյան և հյուսիսային ափերը՝ Կեկսհոլմ, Սորտավալա, Սուոյարվի քաղաքներով, Ֆիննական ծոցում գտնվող մի շարք կղզիները, Մերկյարվիից արևելք ընկած տերիտորիան՝



Կուոլայարվի քաղաքով, Ռիբաչի և Սրեդնի թերակղզիների մի մասը— սույն պայմանագրին կցված քարտեզի համաձայն։

Սահմանագծի ավելի մանրամասն նկարագրությունը կվորոշի պայմանավորվող կողմերի ներկայացուցիչներից բաղկացած խառը հանձնաժողովը, վորը պետք է կազմվի սույն պայմանագրի ստորագրման որից հաշված տասնօրյա ժամկետում։

## ՀՈԴՎԱԾ III

Պայմանավորվող յերկու կողմերը պարտավորվում են փոխադարձաբար ձեռնպահ մնալ միմյանց վրա վորևե հարձակումից, և չկնքել վորևե դաշինք կամ չմասնակցել այնպիսի կոալիցիաների, վորոնք ուղղված կլինեն պայմանավորվող կողմերից մեկի դեմ։

## ՀՈԴՎԱԾ IV

Ֆինլանդական Հանրապետությունը համաձայնություն է հայտնում 30 տարի ժամկետով, յուրաքանչյուր տարի Խորհրդային Միության կողմից 8 միլիոն ֆիննական մարկ վճարով Խորհրդային Միության կա—

պալով տալ՝ Խանկո թերակղզին և նրա շուրջը յեղած ծովային տերիտորիան 5 մղոն շառավիղով նրանից դեպի հարավ ու արևելք և 3 մղոն՝ դեպի արևմուտք ու հյուսիս, նրան հարող մի շարք կղզիներ, կից քարտեզին համապատասխան,— այնտեղ ռազմածովային բազա ստեղծելու համար, որն ընդունակ լինի ագրեսիայից պաշտպանելու Ֆիննական ծոցի մուտքը, ըստ որում, ծովային բազան պահպանելու նպատակով Խորհրդային Միությանն իրավունք է տրվում այնտեղ իր հաշվին պահելու անհրաժեշտ քանակությամբ ցամաքային ու օդային զինված ուժեր:

Ֆինլանդական կառավարությունը սույն պայմանագիրն ուժի մեջ մտնելու մոմենտից հաշված տասն օրվա ընթացքում Խանկո թերակղզուց դուրս է բերում իր բոլոր զորքերը, և Խանկո թերակղզին նրա մերձակա կղզիներով անցնում է ԽՍՀՄ կառավարմանը, պայմանագրի սույն հոդվածի համաձայն:

ՀՈԴՎԱԾ V

ԽՍՀՄ-ը պարտավորվում է իր զորքերը դուրս բերել Պետսամոյի մարզից, որը Խորհրդային պետությունը կամավոր կեր-



պով զիջել է Ֆինլանդիային, 1920 թվի հաշտության պայմանագրի համաձայն:

Ֆինլանդիան, ինչպես այդ նախատեսված է յեղել 1920 թվի հաշտության պայմանագրով, պարտավորվում է Հյուսիսային Սառուցյալ ովկիանոսի իր ափերի ջրում չպահել ռազմական և այլ զինված նավեր, բացառությամբ 100 տոննայից պակաս չափի զինված նավերից, որոնք Ֆինլանդիան իրավունք ունի պահելու առանց սահմանափակման, ինչպես նաև պահելու ոչ ավելի քան 15 ռազմական ու այլ զինված նավեր, որոնց տոննաժը չպետք է գերազանցի յուրաքանչյուրի համար 400 տոննայից:

Ֆինլանդիան, ինչպես այդ նախատեսված է յեղել նույն այդ պայմանագրով, պարտավորվում է հիշյալ ջրերում չպահել սուզանավեր և զինված օդանավեր:

Նմանապես և Ֆինլանդիան, ինչպես այդ նախատեսված է յեղել նույն այդ պայմանագրով, պարտավորվում է այդ ափերին չկառուցել ռազմական նավահանգիստներ, ռազմական նավատորմի բազաներ ու ռազմական նորոգման արհեստանոցներ ավելի մեծ ծավալով, քան այդ անհրաժեշտ է հիշյալ նավերի ու նրանց սպառազինման համար:

## ՀՈԴՎԱԾ VI

Խորհրդային Միությունը և նրա քաղաքացիներին, ինչպես այդ նախատեսված է յեղել 1920 թվի պայմանագրով, տրվում է ազատ տրանզիտի իրավունք Պետսամոյի մարզի վրայով՝ Նորվեգիա ու հետ, ըստ վորում Պետսամոյի մարզում Խորհրդային Միությանը տրվում է հյուպատոսություն հիմնելու իրավունք:

Պետսամոյի մարզի վրայով ԽՍՀ Միությունից Նորվեգիա փոխադրվող բեռները, ինչպես նաև նույն այդ մարզի վրայով Նորվեգիայից ԽՍՀՄ փոխադրվող բեռներն ազատվում են ստուգումից ու կոնտրոլից, բացառությամբ միայն այն կոնտրոլի, վորն անհրաժեշտ է տրանզիտային հաղորդակցությունը կարգավորելու նկատառումներով, ինչպես նաև չեն հարկվում մաքսով, տրանզիտային ու այլ գանձույթներով:

Տրանզիտային բեռների վերոհիշյալ կոնտրոլը թույլատրվում է միայն այն ձևով, վորը պահպանվում է այդպիսի դեպքերում ըստ միջազգային հաղորդակցության սահմանված սովորությունների:

ԽՍՀՄ այն քաղաքացիները, վորոնք ու-



ղևորվում են Պետսամոյի մարզի վրայով Նորվեգիա և հետ՝ Նորվեգիայից— ԽՍՀՄ, ունեն տրանզիտային ազատ ուղևորման իրավունք, խորհրդային համապատասխան որգանների կողմից տրվող անձնագրերի հիման վրա:

Գործող ընդհանուր կանոնների պահպանումով խորհրդային չզինված թռչող ապարատներն իրավունք ունեն Պետսամոյի մարզի վրայով ոդային հաղորդակցություն պահպանել ԽՍՀՄ և Նորվեգիայի միջև:

## ՀՈԴՎԱԾ VII

Ֆինլանդական կառավարությունը Խորհրդային Միությանը տալիս է ԽՍՀՄ ու Շվեդիայի միջև ապրանքների տրանզիտի իրավունք, և այդ տրանզիտը յերկաթուղային ամենակարճ ճանապարհով զարգացնելու նպատակով ԽՍՀՄ-ն ու Ֆինլանդիան անհրաժեշտ են գտնում յուրաքանչյուր կողմն իր տերիտորիայում ըստ հնարավորության 1940 թվի ընթացքում կառուցել յերկաթուղի, վորը Կանդալակշա քաղաքը միացնի Կեմիյարվի քաղաքի հետ:

## ՀՈԴՎԱԾ VIII

Սույն պայմանագիրն ուժի մեջ մտնելով, վերսկսվում են տնտեսական հարաբերությունները պայմանավորվող կողմերի միջև և այդ նպատակով պայմանավորվող կողմերը բանակցությունների մեջ կմտնեն առևտրական պայմանագիր կնքելու համար:

## ՀՈԴՎԱԾ IX

Սույն հաշտության պայմանագիրն ուժի մեջ է մտնում նրա ստորագրումից անմիջապես հետո և յենթակա յե հետագա ռատիֆիկացիայի:

Ռատիֆիկացիոն ակտերի փոխանակությունը կկատարվի տասն որվա ընթացքում, Մոսկվա քաղաքում:

Սույն պայմանագիրը կազմված է յերկու բնագրով, յուրաքանչյուրը ռուսերեն, ֆիններեն ու շվեդական լեզուներով, Մոսկվա քաղաքում, 1940 թվի մարտի 12-ին:

Վ. ՄՈԼՈՏՈՎ — ՌԻՍՏՈ ՌՅՈՒՏԻ
Ա. ԺԴԱՆՈՎ — ՅՈՒ. ՊԱԱՍԻԿԻՎԻ
Ա. ՎԱՍԻԼԵՎՍԿԻ — Ռ. ՎԱԼԴԵՆ
ՎՅԱՅՆՈ ՎՈՅՈՆՄԱԱ



# ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ԽՍՀՄ ՅԵՎ ՖԻՆԼԱՆԴԻԱՅԻ ՄԻՋԵՎ ԿՆՔՎԱԾ ՀԱՇՏՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆԱԳՐԻ ԱՌԹԻՎ

12 ՄԱՐՏԻ, 1940 Թ.

Պայմանավորվող կողմերը սահմանում են ռազմական գործողությունները դադարեցնելու և զորքերը պայմանագրով սահմանված պետական սահմանից այն կողմը փոխադրելու հետևյալ կարգը.

1. Յերկու կողմերն ել պատերազմական գործողությունները դադարեցնում են 1940 թվի մարտի 13-ին, Լենինգրադի ժամանակով ժամը 12-ին:

2. Ռազմական գործողությունները դադարեցնելու սահմանված ժամից, առաջավոր զորամասերի դասավորման միջև սահմանվում է մեկ կիլոմետրանոց չեզոք գոտի, ըստ վորում առաջին որվա ընթացքում մեկ կիլոմետրով հետ է քաշվում այն կողմի զորամասը, վորը գտնվում է մյուս կողմի տերիտորիայի վրա, համաձայն պետական նոր սահմանի:

3. Զորքերի հետքաշումը պետական նոր

սահմանից այն կողմը և մյուս կողմից զորքերի առաջխաղացումը դեպի այն, սկսվում է 1940 թվի մարտի 15-ի ժամը 10-ից՝ Ֆիննական ծոցից մինչև Լիյաքսա ընկած սահմանի ամբողջ յերկարությամբ, և մարտի 16-ի ժամը 10-ից Լիյաքսայից հյուսիս: Հետքաշումը կատարվում է օրական առնվազն 7 կիլոմետր ամենօրյա անցումներով, ըստ վորում մյուս կողմի զորքերի առաջխաղացումը կատարվում է այն հաշվով, վոր հետքաշվող զորքերի թիկունքային զորամասերի և դեպի նոր սահմանը շարժվող մյուս կողմի առաջավոր զորամասերի միջև լինի առնվազն 7 կիլոմետր տարածություն:

4. Հետքաշման համար պետական սահմանի առանձին հատվածներում, յերրորդ կետի համաձայն, սահմանվում են հետևյալ ժամկետները.

ա) Տունգա-Յոկի գետի ակունքների, Կուոլայարվիի, Տակալայի, Իոուկամո-Յարվի լճի արևելյան ափի շրջանում մեկ և մյուս կողմի զորքերի հետքաշումն ավարտվում է մինչև 1940 թվի մարտի 20-ի ժամը 20-ը.

բ) Կուխմոնիեմայից հարավ գտնվող հատվածում, Ոլավայի շրջանում զորքերի



հետքաշումն ավարտվում է մինչև 1940 թվի մարտի 22-ի ժամը 20-ը.

գ) Դոնգասվար, Վյարցիլյա, Մատկասելկա կայարանի շրջանում յերկու կողմերի զորքերի հետքաշումն ավարտվում է մինչև 1940 թվի մարտի 26-ի ժամը 20-ը.

դ) Մատկասելկա կայարանի, Կոյցանլախտի շրջանում զորքերի հետքաշումն ավարտվում է մինչև 1940 թվի մարտի 22-ի ժամը 20-ը.

յե) Կոյցանլախտի, Ենսո կայարանի շրջանում զորքերի հետքաշումն ավարտվում է մինչև 1940 թվի մարտի 25-ի ժամը 20-ը.

զ) Ենսոտոսարով Իատե կայարանի շրջանում զորքերի հետքաշումն ավարտվում է մինչև 1940 թվի մարտի 19-ի ժամը 20-ը:

5. Կարմիր բանակի զորքերի եվակուացիան Պետսամոյի շրջանից ավարտել մինչև 1940 թվի ապրիլի 10-ը:

6. Յերկու կողմերի հրամանատարությունը պարտավորվում է զորքերը պետական սահմանից այն կողմը քաշելիս, մյուս կողմին անցնող քաղաքներում և վայրերում անհրաժեշտ միջոցներ ձեռք առնել նրանց պահպանման ուղղությամբ և ձեռնարկել հարկ յեղած միջոցները, վորպեսզի քաղաքները, ավանները, պաշտպանական ու

տնտեսական կառուցումները (կամուրջներ, ամբարտակներ, ոդանավակայաններ, զորանոցներ, պահեստներ, յերկաթուղային հանգույցներ, արդյունաբերական ձեռնարկություններ, հեռագրատներ, ելեկտրոկայաններ) պահպանվեն փչացումից ու վոչնչացումից:

7. Այն բոլոր հարցերը, վորոնք կարող են ծագել սույն պայմանագրի 6-րդ կետում մատնանշված շրջանները, կետերը, քաղաքները և այլ ոբյեկտները մեկ կողմից մյուսին հանձնելիս, լուծվում են տեղում՝ յերկու կողմերի ներկայացուցիչների միջոցով, վորի համար յերկու բանակների չարժման յուրաքանչյուր հիմնական ճանապարհի վրա հրամանատարությունն առանձնացնում ե հատուկ լիազորներ:

8. Պատերազմական գերիների փոխանակումը կատարվում ե հնարավորին չափ ամենակարճ ժամկետում՝ ռազմական գործողությունները դադարեցնելուց հետո, հատուկ համաձայնության հիման վրա:

| | |
|---|---|
| Վ. ՄՈԼՈՏՈՎ | ՌԻՍՏՈ ՌՅՈՒՏԻ |
| Ա. ԺԴԱՆՈՎ | ՅՈՒ. ՊԱԱՍԻԿԻՎԻ |
| Ա. ՎԱՍԻԼԵՎՍԿԻ | Ռ. ՎԱԼԴԵՆ |
| | Վ. ՅԱՑՆԵ ՎՈՑՈՆՄԱԱ |



# Ի՞ՆՉ Ե ՆԵՐՄՈՒԾՈՒՄ ԽՍՀՄ-Ն ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻՑ ՅԵՎ Ի՞ՆՉ Ե ԱՐՏԱՀԱՆՈՒՄ

Յեվրոպայի իմպերիալիստները հին Ռուսաստանից դուրս եյին քաշում ամենաթանկարժեք հումքն ու գյուղատնտեսական մթերքները շատ եժան գներով և Ռուսաստանին մատակարարում եյին խիստ բարձր գներով մեքենաներ, գունավոր մետաղներ, ածուխ, բուրդ և բամբակ: Այդ պայմանավորում եր ցարական Ռուսաստանի տնտեսական ուժեղ կախումն արտասահմանից:

ԽՍՀՄ-ն իր գոյության առաջին իսկ որերից իր արտաքին առևտուրը կառուցեց միանգամայն նոր հիմունքներով: Սահմանվեց արտաքին առևտրի մոնոպոլիա*): Արտաքին առևտրի առաջ դրվեց գլխավոր մի

*) Այսինքն ամբողջ արտաքին առևտուրը կենտրոնացվեց պետության ձեռքում:

խնդիր, այն է՝ ուժանդակել սոցիալիզմի կառուցմանը: Հենց այդ գլխավոր խնդրով էլ վորոշվեց մեր իմպորտի (ապրանքների ներմուծման) և էքսպորտի (ապրանքների արտահանման) ինչպես նոմենկլատուրան (այսինքն ապրանքների տեսակները), այնպես էլ ծավալը (քանակությունը) սոցիալիստական շինարարության զանազան էտապներում:

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԻՄՊՈՐՏԻ ԴԵՐԸ ՅԵՐԿՐԻ ԻՆԴՈՒՍՏՐԱԼԻԶԱՑԻԱՅԻ ԳՈՐԾՈՒՄ

Խաղաղ շինարարության առաջին տարիներում, ժողովրդական տնտեսության վերականգնման ժամանակաշրջանում, խորհրդային իմպորտի մեջ առավել կամ նվազ նշանակալի դեր էյին խաղում թեթև արդյունաբերության համար անհրաժեշտ հումքը, պարենավորման և լայն սպառման առարկաները:

Երբ սկսվեց հերոսական պայքարը մեր յերկիրն ինդուստրիալ հզոր տերության վերածելու համար, խորհրդային իմպորտն ամբողջապես յենթակա դարձվեց ինդուստրիալ բազայի ստեղծման խնդրին: ՍՍՀՄ



ներմուծվեցին մեծ քանակությամբ մեքենաներ, զանազան սարքավորումներ և մետաղներ: Այդ ներմուծումը խիստ նպաստեց ծանր ինդուստրիայի շինարարության տեմպերն արագացնելուն:

Մեքենաների և սարքավորման մասը խորհրդային իմպորտի մեջ առաջին հնգամյակի ընթացքում բարձրացավ 1930 թվին 50%-ի և 1931 ու 1932 թվերին՝ 60%-ի: Առաջին հնգամյակի չորս տարում ներմուծվեցին ավելի քան 7 միլլիարդ ռուբլու գումարի մեքենաներ և սարքավորում:

Մետաղներ էլ շատ ներմուծվեցին: Նրանց տեսակարար կշիռը մեր իմպորտի մեջ կազմում էր 1930 թվին 24%, իսկ 1931 թվին՝ 21,4%: Իսկ մնացած ապրանքների իմպորտը նվազագույնի յեր հասցվել:

Ընկեր Ստալինը 1935 թվին ԲԳԿԲ-ի ակադեմիականների ավարտական հանդեսում արտասանած ճառում ասել է.

«Իհարկե, մենք կարող էյինք այն 3 միլլիարդ ռուբլու վալյուտան, վոր ձեռք բերվեց ամենախիստ խնայողության ճանապարհով և ծախսվեց մեր ինդուստրիայի ստեղծման վրա,— մենք կարող էյինք այն գործադրել հումքի իմպորտի և լայն սպառ

ման առարկաների արտադրության ուժեղացման վրա: Այդ էլ իր տեսակի «պլան» է: Բայց այդպիսի «պլանի» դեպքում մենք չէինք ունենա ո՛չ մետալուրգիա, ո՛չ մեքենաշինություն, ո՛չ տրակտորներ և ավտոմոբիլներ, ո՛չ ավիացիա և տանկեր: Մենք անզեն կմնայինք արտաքին թշնամիների առջև: Մենք կջլատեյինք սոցիալիզմի հիմքերը մեր յերկրում: Մենք գերի կդառնայինք ներքին և արտաքին բուրժուազիային»:

Ընկեր Ստալինի այս ցուցումներից յերևում է, թե մեր յերկրի տեխնիկական-տնտեսական անկախության ստեղծման և պաշտպանունակության գործում ինչպիսի հսկայական դեր խաղաց ճիշտ կերպով, լենինաբար, ստալինաբար կառուցված իմպորտը:

## Ի՞ՆՉ ԵՆՔ ՄԵՆՔ ՆԵՐՄՈՒԾՈՒՄ ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻՑ ԱՅԺՄ

Հիմա, յերբ ծանր ինդուստրիան ԽՍՀՄ-ում կառուցված է, յերբ սոցիալիզմը ԽՍՀ Միությունում իրականություն է դարձել,



խորհրդային իմպորտը նշանակալի չափով փոխվել է:

Առաջին, նա խիստ կրճատվել է իր ընդհանուր ծավալով— 1931 թվի 4,8 միլիարդ ռուբլուց (յերբ նա առավելագույն չափերի յեր հասել)— 1,3 միլիարդի՝ 1937 թվին և 1,4 միլիարդի՝ 1938 թվին:

Յերկրորդ, նա փոխվել է նաև ներմուծվող ապրանքների բնույթով: Սեփական մեքենաշինության ստեղծման հետևանքով մեքենաների և սարքավորման իմպորտը կրճատվեց առանձնապես ուժեղ չափով— 1931 թվի 2,9 միլիարդ ռուբլուց 0,4 միլիարդ ռուբլու՝ 1937 թվին և 0,5 միլիարդ ռուբլու՝ 1938 թվին: 1939 թվին մեքենաների իմպորտն է՛լ ավելի կրճատվեց:

Մեքենաների և սարքավորման ներմուծման ծախքերի այդպիսի ուժեղ նվազեցումը թույլ տվեց ավելացնելու արտասահմանից սպառողական ապրանքներ ներմուծելու ծախքերը: Այսպես, օրինակ, մսացու խոշոր յեղջերավոր անասունների իմպորտը, որ 1933 թվին կազմում էր 87 հազար գլուխ, 1937 թվին հասավ 142 հազար գլխի: Մշակված կաշիների իմպորտը 1933 թվին մեկ հազար տոննայից հասավ 1938 թվին հազար հինգ հարյուր տոննայի: Խո-

գերի իմպորտը 1933 թվի 300 գլխից հասավ 1937 թվին 129 հազար գլխի, իսկ 1938 թվին՝ ավելի շատ:

1939 թվին մեր իմպորտի մեջ սպառողական ապրանքների մասն ավելացնելու այս գիծը շարունակվեց:

Վերջերս ԽՍՀՄ-ն առևտրական համաձայնագրեր կնքեց մի ամբողջ շարք երկրների հետ: Ըստ այդ համաձայնագրերի ԽՍՀՄ պետք է ներմուծվեն զանազան տեսակի մթերքներ և մասսայական սպառման առարկաներ:

Մասնավորապես Եստոնիայի հետ կնքված առևտրական նոր համաձայնագրով նախատեսված է կաթի, կովի յուղի, խոզերի ներմուծումը մեր երկիր. Լատվիայի հետ կնքված համաձայնագրով նախատեսված է խոզերի և կովի յուղի իմպորտը. Լիտվայի հետ կնքված համաձայնագրով նախատեսված է խոզերի, կովի յուղի, կաշեհումքի իմպորտը. Բուլղարիայի հետ կնքված համաձայնագրով նախատեսված է խոզերի, կաշեհումքի, ծխախոտի, վարդի յուղի և այլ ապրանքների իմպորտը:

Դրանից բացի, Բուլղարիայի և Եստոնիայի հետ կնքված համաձայնագրերով նախատեսված է այդ երկրներում մանվածքի



վերածել խորհրդային բամբակը մեր տեքստիլ ֆաբրիկաների համար:

Չնայած փոխադրության դժվարություններին, ԽՍՀՄ-ն շարունակում է կակաո, սուրճ, համեմունքներ, մրգեր գնել հեռավոր երկրներից: Հիմա, երբ ԽՍՀՄ-ն հասել է տեխնիկական-տնտեսական անկախության, նա կարող է իրեն թույլ տալ ընդարձակելու սպառողական ապրանքների ներմուծումը:

Թեպետև սպառողական ապրանքները շարունակում են համեստ տեղ գրավել ԽՍՀՄ-ի իմպորտի մեջ, բայց և այնպես այդ ապրանքների տեսակարար կշիռն աճում է: 1931 թվին այդ տեսակարար կշիռը հավասարվում էր 4,6%-ի, 1938 թվին բարձրացավ 12,1%-ի:

Նկատի ունենալով այն բանը, որ ինչքան կարելի յե շուտ պետք է կատարել երրորդ հնգամյակի վիթխարի պլանները, ԽՍՀՄ-ն շարունակում է ներմուծել բավական նշանակալի քանակությամբ մեքենաներ, մետաղներ և արդյունաբերական ապրանքներ, որոնք երրորդ հնգամյակում եւ խորհրդային իմպորտի գլխավոր հոդվածներն են հանդիսանում:

Այսպիսին է դրությունը ԽՍՀՄ-ի իմպորտի գործում:

## Ի՞ՆՉՊԵՍ Է ՓՈԽՎԵԼ ՄԵՐ ԵՔՍՊՈՐՏԸ

Ինչ վերաբերում է եքսպորտին, ապա նա էլ է փոխվել ԽՍՀՄ-ի ժողովրդական տնտեսության մեջ կատարված փոփոխությունների համապատասխան:

ԽՍՀՄ-ն իր ապրանքներն արտահանում է այն պատճառով, որ տարբերկրյա վալյուտա ստանա իր իմպորտի դիմաց վճարելու համար: Դրա համար էլ եքսպորտի չափերն ընդհանուր առմամբ համապատասխանում են իմպորտի չափերին:

Եքսպորտն էլ իմպորտի նման վերջին տարիներս ուժեղ չափով կրճատվեց: 1930 թվին, այսինքն այն տարում, յերբ եքսպորտը հասել էր ամենաբարձր չափերի, նա կազմում էր 4,5 միլիարդ ռուբլի, իսկ 1937 թվին նա կազմում էր ընդամենը 1,7 միլիարդ ռուբլի: 1938 թվին նա ավելի ևս կրճատվեց, իջավ 1,3 միլիարդ ռուբլու: 1939 թվին տեղի ունեցավ ե՛լ ավելի ուժեղ կրճատում:

Խորհրդային եքսպորտի ապրանքների



կազմը փոխվում էր յերկրի ինդուստրիալիզացիայի զարգացման համեմատ:

Մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունը Ռուսաստանի եքսպորտը 70%-ով բաղկացած էր պարենավորման առարկաներից և այլ գյուղատնտեսական մթերքներից: Ռուսաստանը կուշտ փորով չեր ուտում, բայց արտահանում էր հսկայական քանակությամբ հաց, կովի յուղ, շաքար, հավկիթ և այլ մթերքներ:

Խորհրդային Միությունն էլ, ժողովրդական տնտեսության վերականգնման համար պայքարելու ժամանակաշրջանում և ինդուստրիալիզացիայի համար պայքարելու ժամանակաշրջանում, սեփական ծանր արդյունաբերության շինարարությունն արագացնելու նպատակով, ստիպված յեղավ (հաճախ ի վնաս սեփական սպառման) արտահանել մեծ քանակությամբ հաց, յուղ, ձկնեղեն, մսամթերքներ և այլն: Մեր արդյունաբերությունը թույլ էր զարգացած և չեր կարող շատ արդյունաբերական ապրանքներ հատկացնել եքսպորտին: Այստեղ տեղին է հիշատակել ընկեր Ստալինի խոսքերը ամերիկյան մամուլի ներկայացուցիչների հետ 1936 թվի մարտի 1-ին ունեցած զրույցից:

«Իհարկե,—ասաց ընկեր Ստալինը,—մի վորևե նոր բան կառուցելու համար հարկ ե լինում խնայողություն անել, միջոցներ կուտակել, ժամանակավորապես կրճատել սեփական պահանջմունքները, ուրիշներից փոխ առնել: Յեթե ուզում ես նոր տուն կառուցել, ապա փող ես կուտակում, ժամանակավորապես կրճատում ես քո պահանջմունքները, այլապես տունը կարող ես և չկառուցել: Այդ առավել ևս արդարացի յե, յերբ խոսքը մի ամբողջ նոր մարդկային հասարակություն կառուցելու մասին ե: Հարկ եր լինում ժամանակավորապես կրճատել վորոշ պահանջմունքները, կուտակել համապատասխան միջոցներ, լարել ուժերը»:

Սակայն դեռևս ինդուստրիալիզացիայի համար պայքարելու ժամանակաշրջանում գյուղատնտեսական մթերքների տեսակարար կշիռն եքսպորտի մեջ խիստ պակասեց ի հաշիվ արդյունաբերական ապրանքների մասի ավելացման: Արդեն իսկ 1930 թվին արդյունաբերական ապրանքների մասն արտահանման մեջ կազմում եր 58%, 1913 թվի 29%-ի դիմաց: Հետագայում այդ տեսակարար կշիռը տարեց-տարի բարձրացավ և



արդեն իսկ 1936 թվին հասավ համարյա 80%-ի:

Խորհրդային եքսպորտի գլխավոր ապրանքներն են հանդիսանում վերջին տարիներս անտառանյութերը և ծանր արդյունաբերության արտադրանքները —նավթամթերքներ, մարգանեցի հանքանյութ, պարարտանյութեր և քիմիկալիաներ: ԽՍՀՄ-ի եքսպորտի մեջ նշանակալի տեղ են գրավում մորթեղենն ու մշակված մուշտակները, ինչպես նաև հացահատիկային մթերքները:

Վերջին տարիներս ԽՍՀՄ-ի եքսպորտի մեջ ավելի ու ավելի նկատելի դեր են սկսում խաղալ մետաղյա շինվածքներն ու մեքենաները:

Մեր մեքենաշինական արդյունաբերության արտադրանքի աճման հիման վրա (1937 թվին նա աճել եր 1913 թվի համեմատությամբ 13,7 անգամ) մենք վոչ միայն ազատվեցինք արտասահմանում մի ամբողջ շարք բարդ մեքենաներ և սարքավորումներ գնելու անհրաժեշտությունից, այլև ինքներս սկսեցինք ուրիշ յերկրներ արտահանել գյուղատնտեսական գործիքներ և մեքենաներ, տրակտորներ, դազգյահներ, տեքստիլ սարքավորում, ավտոմոբիլներ և այլն:

Մեր եքսպորտի բնույթի արմատական փոփոխությունը կարելի յե ցույց տալ հետևյալ օրինակով:

Յեթե 1913 թվին Ռուսաստանը ներմուծում եր չուգուն, մեքենաներ, պարարտանյութեր և նույնիսկ ելեքտրական լամպեր, ապա 1937 թվին այդ բոլոր առարկաներն իմպորտային ապրանքներից դարձել եյին եքսպորտային ապրանքներ:

Այս տվյալները պերճախոս կերպով վկայում են այն մասին, վոր մեր եքսպորտը ստացել ե ցայտուն կերպով արտահայտված արդյունաբերական բնույթ:

Ընդառաջել խորհրդային ժողովրդի աճող պահանջմունքներին:

Ամբողջ եքսպորտի ընդհանուր ծավալը կրճատելու հնարավորության հետևանքով, ինչպես նաև արդյունաբերական շինվածքների եքսպորտի զարգացման հետևանքով, Խորհրդային Միությունը վերջին տարիներս ուժեղ չափով կրճատեց կամ իսպառ դադարեցրեց սպառողական և պարենային ապրանքների արտահանումը:

Այժմ ամենևին չեն արտահանվում կովի յուղ, մսամթերքներ, ձկնամթերքներ, մրգեր, մորթած թռչուններ, կոնսերվներ: Նվազագույնի յե հասցված շաքարի, վուշի,



մորթեղենի, բամբակի գործվածքների և այլ ապրանքների եքսպորտը: Այսպես, օրինակ, 1931 թվին արտահանվել ե 143 միլիոն ռուբլու շաքար, իսկ 1938 թվին՝ 35,7 միլիոն ռուբլու: Միևնույն ժամանակ շաքարի արտադրությունը մեզանում աճել ե ավելի քան յերկու անգամ: 1931 թվին արտահանվել ե 246 միլիոն ռուբլու մորթեղեն, իսկ 1938 թվին՝ միայն 131 միլիոն ռուբլու, բամբակի գործվածքներ համապատասխանորեն՝ 203 և 56 միլիոն ռուբլու և այլն:

Մեր կուսակցությունը և խորհրդային կառավարությունը մեծագույն հոգատարություն են ցուցաբերում, վորպեսզի խորհրդային ժողովրդի բուռն թափով աճող պահանջմունքները բավարարվեն ըստ հնարավորին լրիվ չափով: Այդ պատճառով սպառողական ապրանքների եքսպորտը թույլատրվում ե միայն այդ ապրանքներից նրանց վերաբերմամբ, վորոնք մեզանում կան առատությամբ, կամ հատուկ անհրաժեշտության դեպքում:

Այդ համեմատենք սպառողական ապրանքների հին ժամանակվա եքսպորտի վերաբերյալ մի քանի տվյալների հետ: 1913 թվին ցարական Ռուսաստանը արտահանում

էր յերկրում արտադրվող ամբողջ յուղի 55 տոկոսը, շաքարի 11,5 տոկոսը, ցորենի 18 տոկոսը, գարու 34 տոկոսը, յեգիպտացորենի 48 տոկոսը և այլն:

Իսկ մեր յերկրի ներքին արտադրության վողջ ծավալի վո՞ր մասն է կազմում ամբողջ խորհրդային էքսպորտը, կարո՞ղ է նա նկատելի չափով անդրադառնալ յերկրի պարենային և այլ ապրանքային ֆոնդերի վրա:

Թվերը վկայում են այն մասին, վոր ԽՍՀՄ-ն այժմ արտահանում է յերկրում արտադրվող պրոդուկցիայի շատ փոքր մասը: Ընդհանրապես խորհրդային իշխանության հաղթանակի հաստատվելու ժամանակվանից այդ մասը յերբեք մեծ չի յեղել, իսկ հիմա տառացիորեն չնչին է դարձել:

1930 թվին (այսինքն՝ էքսպորտի առավելագույն գումարի տարում) մեր էքսպորտի մասը ներքին արտադրության համեմատությամբ կազմում էր ընդամենը 3,5 տոկոս: Իսկ ներկայումս էքսպորտի տեսակարար կշիռը կազմում է յերկրում արտադրվող պրոդուկցիայի 0,5 տոկոսից վոչ ավելի:

Համեմատության համար մատնանշենք, վոր ԱՄՆ-ը արտասահման է արտահանում



իր պրոդուկցիայի առնվազն 10 տոկոսը, Անգլիան՝ առնվազն 25 տոկոսը, Գերմանիան՝ 20—25 տոկոսը, Բելգիան՝ 56 տոկոսը, Դանիան՝ 54 տոկոսը և այլն:

Այս տվյալների զուգադրումը մեր էքսպորտի հետ առանձին ակնառությամբ ցույց է տալիս ԽՍՀՄ-ի բացարձակ անկախությունն օտարերկրյա շուկաներից:

Ահա թե ինչո՞ւ այժմ էլ, միջազգային սրված իրադրության պայմաններում, մեր յերկրի ժողովրդական տնտեսության զարգացումն ընթանում է իր կարգով:

## ԻՆՉԻ՞ ՀԱՄԱՐ Է ՄԵԶ ՀԱՐԿԱՎՈՐ ԱՐՏԱՔԻՆ ԱՌԵՎՏՈՒՐԸ

Սրանից, իհարկե, չի հետևվում, թե արտաքին առևտուրը մեզ հարկավոր չէ և մենք կարող ենք այն բանի տեղ չդնել:

ԽՍՀՄ-ն շարունակում է զարգացնել իր տնտեսական հարաբերությունները կապիտալիստական յերկրների հետ: Այդ արվում է վոչ նրա համար, վոր մեր յերկիրը չի կարող յոլա գնալ առանց օտարերկրյա մեքենաների և հումքի: Ծայրահեղ դեպքում ԽՍՀՄ-ն կարող է յոլա գնալ առանց իմ-

պորտի ել, վորովհետև այժմ մեր յերկրի ներսում արտադրվում է այն ամենը, ինչի պահանջ ունենք մենք ընդհուպ մինչև կաուչուկը (վորն այժմ մեզանում արտադրվում է հատուկ քիմիական ճանապարհով, սինթետիկ յեղանակով), ընդհուպ մինչև անագը (վորն մինչև վերջերս ամբողջապես ներմուծվում եր արտասահմանից), ընդհուպ մինչև ամեն տեսակի բարդ մեքենան:

Չնայած դրան, մեր այս արտաքին առևտուրն առաջիկայում ևս կարող է օգնել և օգնում է արագացնելու մեր շինարարության հետագա զարգացման տեմպերը:

Մենք ներմուծում ենք և կշարունակենք ներմուծել մի քանի մեքենաներ (հատկապես տեխնիկական նորույթներ) և գունավոր մետաղներ, վորոնք մեզանում այնուամենայնիվ, չնայած արտադրության հսկայական աճման, առայժմ անբավարար են: Մենք ներմուծում ենք և կներմուծենք սուրճ, կակաո և նման մթերքներ, վորոնք առայժմ ԽՍՀՄ-ում չեն արտադրվում:

Վերջապես, հարկավոր է չմոռանալ նաև մյուս յերկրների հետ տարվող մեր առևտրի հսկայական արտաքին-քաղաքական նշանակության մասին: Մեր արտաքին առևտուրը հանդիսանում է Խորհրդային Միության խաղաղության քաղաքականության կարևորագույն լծակը: Մեր բարեկամական քաղաքական հարաբերությունները մյուս յերկրների հետ ամրապնդվում են և չեն կարող չամրապնդվել ինչպես կուլտուրական, այնպես ել տնտեսական կապերով: Լենինյան-ստալինյան իմաստուն միջազգային քաղաքականությանը համապատասխան ել մենք կանոնավորում ենք մեր արտաքին առևտուրը:

# ՆՈՐՎԵԳԻԱ

## ՏԵՐԻՏՈՐԻԱՆ, ԱԶԳԱԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ

*Նորվեգիան բռնում է Սկանդինավյան թերակղզու արևմտյան մասը, որը դարձած է դեպի Ատլանտյան օվկիանոսը: Սկագերրակ նեղուցով ողողված ծայրագույն հարավային ափերից մինչև Բարենցի ծովով ողողված ծայրագույն հյուսիսային ափերի տարածությունը 1756 կիլոմետր է: Առավելագույն լայնությունն արևմուտքից-արևելք 430 կիլոմետր է: Ցամաքային սահմանները տարածվում են 2570 կիլոմետրով (Շվեդիայի հետ՝ 1650 կիլոմետր և Ֆինլանդիայի հետ՝ 920 կիլոմետր): Նորվեգիայի մեկ յերրորդ մասը գտնվում է Բևեռային շրջանագծից դենը:*

*Նորվեգիայի տարածությունը 323 հազար քառակուսի կիլոմետր է: Նորվեգիային է պատկանում նաև Սվալբարդ (Շպիցբերգեն) արշիպելագը, Յան-Մայեն կղզին Հյուսի-*



*սային Սառուցյալ օվկիանոսում, Բուվետոյա (Բուվե) և Պետրոս I-ի կղզիները հարավային կիսագնդում: Վոչպիտանի հողերը կազմում են տերիտորիայի 73%-ը, անտառները բռնում են 23%-ը, իսկ ծովափնյա մարգերում և գետերի հովիտներում գտնվող պիտանի ոգտահողերը բռնում են ընդամենը 4%-ը:*

*Յերկրի հսկայական մասը բռնում են Սկանդինավյան լեռները, վորոնք կազմում են համարյա անմարդաբնակ մասսիվներ: Նորվեգիայի ափերը ծայր աստիճանի կտրատված են, կազմում են ցամաքի մեջ խորացող ծովախորշեր— Ֆիորդներ, ուր կարող են մտնել օվկիանոսային շոգենավերը: Ափունքային գծի յերկարությունը կազմում է 20 հազար կիլոմետր: Ափերի մոտ կան բազմաթիվ կղզիներ և խութակղզյակներ: Նորվեգիայի ափերը ողողող ջրերը հարուստ են ձկներով (ձողաձուկ, տառեխ, մակրել և այլն):*

*Նորվեգիայի ազգաբնակչությունը 2,9 միլիոնից ավելի յե. 98%-ը նորվեգիացիներ են: Հյուսիսում ապրում են 45 հազար կվեններ և սամեր:*

## ՈԳՏԱԿԱՐ ՀԱՆԱԾՈՆԵՐԸ

Նորվեգիայում հայտնի յեն բազմաթիվ ոգտակար հանածոների հանքավայրեր, վորոնք, սակայն, մեծ քանակությամբ հանածոներ չեն պարունակում: Կան պիրիտների (ծծմբաքարի) նշանակալի շերտեր, յերկաթի և գունավոր մետաղների (նիկելի, պղնձի, մոլիբդենի, արծաթի, ցինկի) վոչ մեծ հանքաշերտեր, հյուսիսում՝ ապատիտների հանքաշերտեր:

Քարածուխը հանվում է միայն Շպիցբերգեն կղզում և ծածկում է յերկրի պահանջմունքի լոկ աննշան մասը: Ածուխը ներմուծվում է գլխավորապես Անգլիայից: Հեղուկ վառելանյութ նույնպես չկա:

Մեծ քանակությամբ ջրվեժներ կազմող լեռնային գետերն ունեն հիդրոէներգիայի մեծ պաշարներ (մինչև 12 միլիոն ձիու ուժ), վորից ներկայումս ոգտագործվում է միայն 2 միլիոն ձիու ուժի չափով: Հիդրոէներգիայի պաշարների համեմատաբար վոչ մեծ ոգտագործման պատճառներից մեկն է հանդիսանում ածուխի անգլիական արտահանողների դիմադրությունը, վորոնք ձգտում են Նորվեգիան պահել Անգլիայի նկատմամբ լիակատար կախման վիճակում:



## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ՅԵՎ ԳՅՈՒՂԱ-ՏԸՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ

Ինչպես նորվեգիական արդյունաբերության, այնպես էլ գյուղատնտեսության տարբերիչ գիծն է հանդիսանում մասնատումը, ձեռնարկությունների մանր բնույթը: Այսպես, որինակ, բոլոր արդյունաբերական ձեռնարկությունների 85%-ը կազմում են մանր, 50-ից ավելի բանվոր չունեցող ձեռնարկությունները: Ավելի քան 200 հազար գյուղական տնտեսություններից միայն մոտ 800 տնտեսություններն ունեն յուրաքանչյուրը 20 հեկտարից ավելի հող: Դրա շնորհիվ գյուղացիների 74%-ը չի կարող ապահովել իր գոյությունն առանց միաժամանակ մի վորևէ արհեստով կամ ձկնորսությամբ զբաղվելու:

Նորվեգիական ինդուստրիայի առանձնահատկությունն է հանդիսանում նաև արտադրության միջոցներ արտադրող արդյունաբերության խիստ թույլ զարգացումը:

Նորվեգիայի արդյունաբերությունը գտնվում է ոտարերկրյա կապիտալի մեծ ազդեցության և վերահսկողության տակ (ցինկի հանույթը՝ բելգիականի, ծծմբինը՝

շվեդականի, նիկելինը՝ անգլո-կանադականի, ալյումինինը՝ ամերիկականի, ֆերրո-ձուլվածքներինը՝ ամերիկականի և շվեդականի):

Արդյունաբերական տեսակետից առավել զարգացած են հարավային ռայոնները—մայրաքաղաք Օսլոն, Կրիստիանսանը, Ստավանգերը, Բերգենը, հյուսիսում՝ Կիրկենսը:

Արդյունաբերության գլխավոր ճյուղերն են՝ անտառամշակման արդյունաբերությունը (փայտի զանգված, ցելյուլոզա, թուղթ, կարտոն), որը տալիս է համաշխարհային արտադրանքի 20%-ը, և մետաղի արդյունաբերությունը, որն աշխատում է բերովի հումքով: Ալյումինի արտադրության գծով Նորվեգիան հետ է մնում միայն Կանադայից, տալով համաշխարհային արտադրության մինչև 10%-ը: Շատ լավ է դրված ֆերրո-ձուլվածքների արտադրությունը: Մեքենաշինությունն առավելապես սպասարկում է անտառամշակման և թղթի արդյունաբերությանը: Զարգացած է քիմիական արդյունաբերությունը (սինթետիկ ազոտի, պայթուցիկ նյութերի, խիմիկալիաների արտադրություն գերմանական «Ի. Գ. Ֆարբենինդուստրի» ֆիրմայի կապիտալի



մասնակցությամբ), կոնսերվի արդյունաբերությունը՝ ձկնեղենի և կաթնամթերքների վերամշակման գծով: Նավաշինությունը զգալի չափով կրճատվել է այն բանի հետևանքով, որ Նորվեգիան չի կարողանում մրցել մյուս յերկրների հետ:

Արդյունաբերության մյուս ճյուղերն սպասարկում են գերազանցապես ներքին շուկային: Արդյունաբերության ծավալով Նորվեգիան Շվեդիայից հետ է մնում 3—4 անգամ:

Գյուղատնտեսությունը հացահատիկով (հացով) ապահովում է յերկրի պահանջմունքի մոտ կեսը միայն: Առավել զարգացած են անասնապահությունն ու բանջարաբուծությունը:

## ՁԿՆՈՐՍՈՒԹՅՈՒՆԸ

Նորվեգիայի եկոնոմիկայում մեծ տեսակարար կշիռ է կազմում ձկնորսությունը, որն առանձնապես լայն է զարգացած Լոֆոտենյան արշիպելագի ռայոնում:

Նորվեգիայում 110 հազար ձկնորս կա: Նորվեգիան որսում է մոտ 1 միլիոն տոննա ձուկ, այսինքն համարյա այնքան, որ-

քան Անգլիան: Շատ ծանր է ձկնորսների դրությունը, վորոնք չեն կարող իրենց գոյությունը պահպանել առանց պետության հատուկ սուբսիդիաների: Բացի դրանից, ձկան աստիճանական հեռացումը դեպի հյուսիս ձկնորսներին թույլ չի տալիս իրենց հնամաշ ու փոքր նավերով ափից շատ հեռանալ:

Նորվեգիան աշխարհումս առաջին տեղն է գրավում կետ ձկան վորսի գծով (համաշխարհային վորսի 50%-ը):

## ՏՐԱՆՍՊՈՐՏԸ

Նորվեգիան ունի վիթխարի առևտրական նավատորմ— 4600 հազար տոննա, վորը կազմում է համաշխարհային տոննաժի 6%-ը,— և հետ է մնում միայն Անգլիայից, ԱՄՆ-ից ու Ճապոնիայից, գրավելով, այսպիսով, չորրորդ տեղը աշխարհում: Իսկ յեթե վերցնենք տոննաժն ըստ ազգաբնակչության յուրաքանչյուր շնչի, ապա Նորվեգիան առաջին տեղն է բռնում աշխարհում: Նավագնացությունը կապի գլխավոր միջոցն է:

Նորվեգիան յերկրի հարավային մասում



ունի մոտ 4 հազար կիլոմետր յերկաթուղի: Հյուսիսում միայն Ոֆոտոյան յերկաթուղին Շվեդիային միացնում է Նորվեգիական Նարվիկ նավահանգստի հետ, վորտեղով շվեդական հանքաքարը գնում է Արևմտյան Յեվրոպա: Հարավային մասում կան լավ խճուղիներ: Հյուսիսը սպասարկվում է գլխավորապես նավագնացությամբ:

Նորվեգիայի բնության բացառիկ գեղեցկությունը, վորը հետ է մնում միայն Շվեյցարիայից և Իտալիայից, գրավում է մեծ թվով տուրիստների և յերկրին տալիս է նշանակալի յեկամուտ:

## ԱՐՏԱՔԻՆ ԱՌԵՎՏՈՒՐԸ ՅԵՎ ԲՅՈՒՋԵՆ

Արտաքին առևտրի գծով Նորվեգիան հիմնական կապեր ունի Անգլիայի, Գերմանիայի և ԱՄՆ-ի հետ: Չորացրած և ապխտած ձուկ է արտահանվում նաև Իտալիա, Իսպանիա, Պորտուգալիա և Աֆրիկա: Արտահանման 25%-ը, կազմում է պարենը (ձուկ, անասնապահական մթերքներ), 50%-ը հումքն ու կիսաֆաբրիկատները, 25%-ը՝ գործարանային ապրանքները:

Արտաքին առևտրի շրջանառությունն ունի պասիվ սալդո, վորը ծածկվում է ի

հաշիվ նավագնացությունից, կետորսությունից ու տուրիզմից ստացվող յեկամուտների:

Երկրի պետական բյուջեն ընթացիկ 1939/1940 տարում կազմված է 664 միլիոն կրոնի չափով: Նորվեգիայի պետական պարտքը մոտ 1500 միլիոն կրոն է:

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ

Նորվեգիան սահմանափակ ժառանգական միապետություն է, թագավորություն: Մինչև 1905 թիվը Նորվեգիան գտնվում էր Շվեդիայի հետ անհատական ունիայի (միության) մեջ (մեկ թագավորի իշխանության տակ), բայց 1905 թվին անջատվեց իբրև ինքնուրույն պետություն: Ստորտինգը— միպալատանի պարլամենտը— բաղկացած է 150 դեպուտատից, վորոնք ընտրվում են յերեք տարով: Ներկայի գումարման ստորտինգի լիազորությունների ժամկետը յերկարացված է ևս մեկ տարով: Ստորտինգն իր կազմից առանձնացնում է 38 դեպուտատ, վորոնք կազմում են այսպես կոչված լագտինգը, իսկ մնացած 112 դեպուտատները կազմում են ոդելստինգը, վորին պատկանում է որենսդրական նախաձեռնությունը:



Սահմանադրությունը նախատեսում է իշխանության բաժանումը դատական, որենսդրական և գործադիր մասերի: Դատական իշխանությունը բաղկացած է զինվորական դատարանից, քաղաքացիական «ժողովրդական» դատարանից և գերագույն— բարձրագույն դատական իշխանությունից, վորը նշանակվում է կառավարության կողմից:

Որենսդրական իշխանությունն է հանդիսանում ստորտինգը, վորի մեկ յերրորդ մասն ընտրվում է առևտրական քաղաքներից և յերկու յերրորդ մասն ընդհանրապես յերկրից: Ընտրվել կարող է 30 տարեկանի հասած քաղաքացին: Նորվեգիայի քաղաքացիներն ընտրելու իրավունքից ոգտվում են 23 տարեկանից:

Գործադիր իշխանությունն է հանդիսանում կառավարությունը, վորը նշանակվում է թագավորի կողմից: Պետական խորհուրդը— մինիստրների խորհուրդը— բաղկացած է 10 մինիստրից: Ներկայիս կառավարությունը կազմվել է 1936 թվին: Բոլոր մինիստրները «Նորվեգիական բանվորական կուսակցության» անդամներ են (սոցիալ-դեմոկրատներ), բացի մեկից, վերջերս նշանակված զինվորական մինիստրից, վորն անկուսակցական է:

## ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

«Նորվեգիական բանվորական կուսակցությունը» (ՆԲԿ), որը կառավարական կուսակցություն է և թվական կազմով ամենամեծ կուսակցություններից մեկը (170 հազար անդամ), բացառիկ աչքի ընկնող տեղ է գրավում երկրի քաղաքական կյանքում: II Ինտերնացիոնալի տիպիկ սոցիալ-դեմոկրատական, օպորտունիստական կուսակցություն է: ՆԲԿ-ի մեջ կոլեկտիվ կերպով մտնում են Նորվեգիայի համարյա բոլոր արհմիությունները (արհմիությունների անդամները մոտ 350 հազար հոգի են): ՆԲԿ-ի և արհմիությունների անդամների թվի անհամապատասխանությունը բացատրվում է այն բանով, որ արհմիության յուրաքանչյուր առանձին անդամ իրավունք ունի կուսակցության անդամ չլինել, թեկուզ և նրա արհմիությունը կուսակցության մեջ է մտել կոլեկտիվ կերպով: Կուսակցության բացահայտ օպորտունիստական քաղաքականության հետևանքով կուսակցության ստորին կազմակերպություններում նկատվում է դժգոհության աճում և հեռացում կուսակցու-



թյան շարքերից: Լիդերը Տրանմելն է: Պարլամենտում կուսակցությունն ունի 70 մանդատ:

«Վենստրե» (նորվեգերեն՝ «ձախ») կուսակցությունը լիբերալ կուսակցություն է, որը ներկայացնում է կապիտալիստական շրջանները, մանր բուրժուազիային, ինտելիգենցիային և չինովնիկությանը: Լիդերն է միլիոնատեր նավատեր Մովինկելը: Արտաքին քաղաքականության հարցերում կանգնած է «չեզոքության» կողմը: Պարլամենտում ունի 23 մանդատ:

«Խեյրե» («աջ») կուսակցությունը ռեակցիոն բուրժուազիայի ամենախոշոր կուսակցությունն է: Ներկայացնում է խոշոր կապիտալիստներին, ռանտյեներին և բարձր չինովնիկներին, մասամբ էլ խոշոր հողատերերին: Սկզբունքային ծրագիր չունի, սահմանափակվում է ստորտինգի նախընտրական ծրագրով: Լիդերը Խամբրոն է, ստորտինգի պրեզիդենտը: Արտաքին քաղաքականության հարցերում ձևականորեն կանգնած է «չեզոքության» տեսակետի վրա, թշնամական վերաբերմունք ունի ԽՍՀՄ-ի հանդեպ: Պարլամենտում ունի 36 մանդատ:

«Բոնդեպարտի»-ն (գյուղացիական կու-

սակցությունը) ներկայացնում է խոշոր գյուղացիության — կուլակների շահերը: Ըստ եյության, մի մասն է հանդիսանում այսպես կոչված «գյուղացիական միության» («Նորգես բունդելագ»), վորից ձևականորեն դուրս յեկավ 1931 թվին, բայց վորի կողմից ֆինանսավորվում է մինչև այժմ: Պարլամենտում ունի 18 մանդատ:

Նորվեգիական կոմունիստական կուսակցությունը միակ կուսակցությունն է, վոր հետևողականորեն պայքար է մղում նորվեգիական ռեակցիայի դեմ, ի պաշտպանություն բանվոր դասակարգի և աշխատավորության շահերի, ընդդեմ պատերազմի: Սիստեմատիկ կերպով մերկացնում է սոցիալ-դեմոկրատիայի անարգ դերը: Մի շարք պրոֆմիություններում վայելում է մեծ հեղինակություն:

## ՆՈՐՎԵԳԻԱՅԻ ԵԿՈՆՈՄԻԿԱՆ ՅԵՎ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Նորվեգիայի տնտեսական կյանքն այնքան սերտ է շաղկապված ծովի հետ, վոր ծովային նավագնացության պայմանների ամեն մի վատթարացում շատ ցավագնորեն է անդրադառնում նրա տնտեսության վրա:



Պաշտոնական տվյալների համաձայն, Յեվրոպայում բռնկված ներկա պատերազմի ընթացքում Նորվեգիան կորցրել է 40 առևտրական նավ 127945 տոննա ընդհանուր տոննաժով: Ավելի ցայտուն կերպով պատկերացնելու համար այս կորուստները, անհրաժեշտ է նշել, վոր 1914 թվին— իմպերիալիստական պատերազմի առաջին տարում— բոլոր թե պատերազմող և թե՛ չպատերազմող յերկրները կորցրել եյին ընդամենը 100 հազար տոննա:

Ածուխի պակասության պատճառով յերկրի տնտեսական կյանքը ներկայումս խանգարված է: Ձեռնարկությունների մի մասը կանգ է առնում, տրանսպորտն աշխատում է ընդհատումներով, նույնիսկ դպրոցներում դադարեցվում են պարապմունքները: Աշխատավորների կենսական մակարդակը շարունակում է իջնել:

## ԽՍՀՄ-Ն ՅԵՎ ՆՈՐՎԵԳԻԱՆ

Դիվանագիտական հարաբերությունները ԽՍՀՄ-ի և Նորվեգիայի միջև հաստատվել են 1924 թվին: Այդ ամբողջ ժամանակաշրջանում հարաբերությունները յերկու յերկրների միջև զարգացել են նորմալ կեր-

պով: Այն բանից հետո, յերբ սկսվեցին պրովակացիոն գործողությունները Խորհրդային Միության դեմ, ամենից ավելի ռեակցիոն, ԽՍՀՄ-ին և բանվոր դասակարգին թշնամի տարրերը Նորվեգիայում սոցիալ-դեմոկրատական կուսակցության ղեկավարության հետ միասին, Ֆինլանդիային ռազմական օգնություն ցույց տալու արտաքինի տակ ուժեղ կամպանիա ծավալեցին ԽՍՀՄ-ի դեմ պատերազմելու օգտին: Նրանք դիմեցին Խորհրդային Միության հասցեյին ուղղված ամենազազրելի զրպարտությունների, նրանք տարածեցին Հավասի թխած հերյուրանքները ամեն տեսակի՝ «խորհրդային պլանների վերաբերյալ Նորվեգիայի և Շվեդիայի Հյուսիսում» ունենալով միայն մեկ նպատակ—գրգռել Նորվեգիայի հասարակական կարծիքը սոցիալիզմի յերկրի դեմ, վորն այնքա՛ն ատելի յե միջազգային բուրժուազիային:

Բայց Խորհրդային Միության և Ֆինլանդիայի միջև կնքված հաշտության պայմանագիրը խախտեց իմպերիալիստների և նրանց գործակալությունների՝ Հավասի ու Ռեյտերի պլանները, վորոնք փորձում եյին պատերազմը տարածել սկանդինավյան յերկրների վրա: Մեր քաջարի կարմիր բանա-



կը, խաղաղության ստալինյան քաղաքականությունը ջարդ ու փշուր արին պատերազմի հրձիգների դավադրությունները: Նորվեգիայի և Շվեդիայի ժողովուրդները, ինչպես նաև ամբողջ աշխարհի աշխատավորությունը հրճվանքով ընդունեցին ԽՍՀՄ-ի և Ֆինլանդիայի միջև խաղաղության պայմանագրի կնքման լուրը: Խաղաղության ստալինյան քաղաքականության շնորհիվ լիկվիդացիայի յենթարկվեց պատերազմը Յեվրոպայի Հյուսիսում:



# ԱՐՏԱՍԱՀՄԱՆՅԱՆ ՄԱՄՈՒԼԻ ԷՋԵՐԻՑ

## ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ

Չնայած ռեակցիայի կողմից գործադրվող բոլոր հալածանքներին, Ֆրանսիայի կոմունիստական կուսակցությունը, որը անցել է խորն ընդհատակ, շարունակում է իր քաջարի պայքարը բանվորների իրավունքների համար, ընդդեմ իմպերիալիստական պատերազմի: Ֆրանսիական կոմունիստների պայքարի վերաբերյալ տեղեկությունները թափանցում են չեզոք յերկրների բուրժուական մամուլի էջերը:

Այսպես, շվեդական «Գետեբորգս խանդելս ոկ շեֆարտստիդնինգ» թերթը գրում է «կոմունիստների գործունեությունն զգալիորեն ավելի լայն է, քան պարլամենտականը, և տարվում է միանգամայն հետևողական կերպով... Չնայած բոլոր հալածանքներին, կոմունիստները շարունակում



են իրենց գործունեությունը: «Յումանիտե» հին, հայտնի թերթը փակված է, բայց դրա դիմաց յերևան են յեկել նոր «Յումանիտե»-ներ, որոնք ամենաանսպասելի և անհասկանալի յեղանակով ծագում են առնում քաղաքներում և նույնիսկ ֆրոնտում»:

Նույն բանի մասին է խոսում նաև բելգիական «Պուրկուա պա» ռեակցիոն թերթը. «Ռազմական գործարաններում, որտեղ նրանք աշխատում են իբրև մոբիլիզացիայի յենթարկվածներ, կոմունիստներն ընդհատակյա, ծայր աստիճանի վտանգավոր պրոպագանդա յեն մղում: Նրանք իրենց աշխատանքի ընկերներին պայքարի յեն հանում ընդդեմ աշխատավարձից հանվող պատերազմական հարկերի և արտաժամյա աշխատանքների»:

Նման հաղորդումները վկայում են այն մասին, որ կոմունիստների ազդեցությունը ֆրանսիական աշխատավորության մեջ աճում է և ընդարձակվում:

## ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ ԹՎԵՐՈՎ

★ Ֆրանսիայի ռազմական ծախքերը 1940 թվին կկազմեն, ըստ «Քյոլնիշե ցայտուն-

գ»-ի հաղորդագրության, 350-ից մինչև 400 միլիարդ ֆրանկ: Դա լոկ մոտավոր հաշիվն է: Հաստատված է միայն այս տարվա առաջին յեռամսյակի ռազմական բյուջեն: Այն կազմում է 60,8 միլիարդ ֆրանկ, այդ թվում 21,8 միլիարդ ֆրանկ՝ ցամաքային բանակի համար, 12,6 միլիարդ՝ ավիացիայի համար, 5,7 միլիարդ՝ նավատորմի և 13,1 միլիարդ՝ սպառազինման համար:

Այն հարցը, թե Ֆրանսիան վո՞րտեղից գումարներ կճարի այս հսկայական ռազմական ծախքերի համար, մնում է բաց, գրում է թերթը:

★ Ինչպես հաղորդում է գերմանական մամուլը, ԱՄՆ-ի 1940 թվի յելքի բյուջեն, վոր Ռուզվելտը ներկայացրեց կոնգրեսի քննությանը, կազմում է 8,4 միլիարդ դոլար: Այս գումարից ռազմական ծախքերը կազմում են 1,8 միլիարդ (ընթացիկ բյուջետային տարվա 1,52 միլիարդի դիմաց): Յեթե հաշվի առնենք ռազմական կարիքներին գնացող մյուս ծախքերը, վորոնք կատարվում են այլ հոդվածներով, ապա ընդհանուր թիվը կհասնի 2,11 միլիարդ դոլարի: Դրանից դուրս, նախատեսվում է ևս մի հատուկ պաշտպանական ֆոնդ ընթացիկ և գալիք բյուջետային տարիների համար



460 միլիոն դոլարի չափով, վորը, Ռուզվելտի հայտարարության համաձայն, պետք է ծածկվի ի հաշիվ մի հատուկ հարկի: Գործազուրկներին ոգնելու հատկացումները կրճատվում են 634 միլիոն դոլարով, ֆերմերներին տրվող սուբսիդիաները՝ 413 միլիոնով:

★ Իտալիայի 1940/1941 թվի յելքի բյուջեն իտալական կաբինետի կողմից հաստատված է 34,9 միլիարդ լիրի գումարով, գրում է անգլիական «Թայմս» թերթը: Այդ գումարից ռազմական ծախքերի համար բաց է թողնվում 10,8 միլիարդ լիր:

Դեֆիցիտը կկազմի 5,9 միլիարդ լիր: Այդ դեֆիցիտը ծածկվելու յե ի հաշիվ հարկերի ավելացման և փոխառությունների բացթողման: Գտնում են, վոր ընթացիկ տարում դեֆիցիտն արտահայտվեց 7 միլիարդ լիրի գումարով. վերջին 6 տարվա դեֆիցիտը հասնում է 55 միլիարդ լիրի:

★ Անգլիական «Մանչեստեր գարդիեն» թերթի տվյալների համաձայն, 1939 թվի դեկտեմբեր ամսին ԱՄՆ-ը արտահանել է 358 միլիոն դոլարի ապրանք— 71 միլիոնով ավելի, քան նոյեմբեր ամսին, և 92 միլիոնով ավելի, քան 1938 թվի դեկտեմբեր ամսին: Այդ ավելացումը կատարվել է

գլխավորապես այն բանի հետեվանքով, վոր մեծ պարտիաներով ինքնաթիռներ, նավեր ու մետաղներ են արտահանվել Անգլիա և Ֆրանսիա: Հենց միայն 29 միլիոն դոլարի ինքնաթիռ է արտահանվել: Անգլո-ֆրանսիական գնումների ընդհանուր գումարը, վոր նոյեմբեր ամսին կազմում էր 44 միլիոն դոլար, դեկտեմբերին հասավ 86 միլիոնի:

---



## ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

## ԹԵՐԹԵՐՈՒՄ ՀԱՆԴԻՊՈՂ ԱՌԱՆՁԻՆ ԲԱՌԵՐԻ ՅԵՎ ՀԱՍԿԱՑՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱՑԱՏՐՈՒԹՅՈՒՆԸ

### ԲԱԼԿԱՆՅԱՆ ԱՆՏԱՆՏԱ

Բալկանյան պետությունների չորսի— Ռումինիայի, Հարավսլավիայի, Թյուրքիայի և Հունաստանի միավորումն է, այսպես կոչված բալկանյան պակտի հիման վրա, վորն այդ յերկրների միջև կնքվել է 1934 թվի փետրվար ամսին: Բալկանյան պակտն ստորագրած յերկրները պարտավորվում են. 1) փոխադարձաբար ապահովել ինչպես իրենց ընդհանուր սահմանները, այնպես էլ իրենց սահմանները մյուս բալկանյան յերկրների հետ և 2) միմյանց հետ համաձայնեցնել միջոցառումներն այնպիսի իրադարձությունների դեպքում, վորոնք կարող են շոշափել պայմանավորված կողմերի՝ պակտով սահմանված շահերը:

Բալկանյան պակտի նպատակն էր, այսպիսով, գոյություն ունեցող դրության

պահպանումը Բալկաններում: Բալկանյան Անտանտայի մեջ չմտան Բուլղարիան և Հունգարիան, վորոնք չահագրգռված էյին հաշտության բանակցությունների վերսայլյան սիստեմի վերանայումով, մի սիստեմ, վորի համաձայն այդ յերկրներից պոկված մարզերը հանձնվեցին մյուս բալկանյան պետություններին:

Բալկանյան Անտանտան ստեղծեցին Անգլիան և Ֆրանսիան՝ վերսալյան սիստեմը պահպանելու և անգլո-ֆրանսիական ազդեցությունը բալկաններում ապահովելու համար: 1939 թվին, պատերազմ սկսելով Յեվրոպայում, անգլո-ֆրանսիական իմպերիալիստները «յերաշխիքներ» տվին Ռումինիային ու Հունաստանին և Թյուրքիայի հետ կնքեցին փոխադարձ ոգնության պակտ: Անգլիան և Ֆրանսիան ձգտում են ստեղծել «Բալկանյան յերկրների ընդհանուր ֆրոնտ» գերմանիայի դեմ և նրանց պատերազմի մեջ քաշել իրենց կողմում:

Այդ նպատակով Անգլիան և Ֆրանսիան վերջին ժամանակներս ուժեղ ճնշում գործ դրին Բալկանյան Անտանտայի անդամների վրա: Նրանք միևնույն ժամանակ ձգտում էյին, վորպեսզի Բուլղարիան ու Հունգարիան հրաժարվեյին իրենց տերիտորիալ



պահանջներից և մտնեյին Բալկանյան Անտանտայի մեջ, վորին անգլո-ֆրանսիական իմպերիալիստները յերազում են իրենց հլու-հնազանդ գործիքը դարձնել պատերազմում:

Սակայն Բալկանյան Անտանտայի յերկրները չեն ուզում պատերազմի մեջ քաշված լինել և շարունակում են առևտրական նորմալ հարաբերություններ պահպանել Գերմանիայի հետ: Փետրվարի 2—4-ին Բելգրադում տեղի ունեցավ Բալկանյան Անտանտայի մշտական խորհրդի հերթական տարեկան սեսսիան: Բուլղարիան և Հունգարիան հրաժարվեցին իրենց ներկայացուցիչներին սեսսիա ուղարկել: Սեսսիայի ընթացքում, չնայած Բալկանյան Անտանտայի անդամների միջև յերևան յեկած խոշոր հակասություններին, պարզ դարձավ, վոր հարավարևելյան Յեվրոպայում հակագերմանական ֆրոնտ ստեղծելու անգլո-ֆրանսիական պլանը տապալվեց: Սեսսիայի մասնակիցները վորոշեցին Բալկանյան պակտը յերկարաձգել 7 տարով և նշեցին, ինչպես ասում է պաշտոնական կոմյունիկեն, «Հաստատ վճռականություն շարունակելու խաղաղության քաղաքականությունը և պահպանելու ներկա պատերազմի նկատմամբ ի-

րենց գրաված դիրքը, այն հաշվով, վոր փորձություններից զերծ մնա Յեվրոպայի այս մասը»:

Թեև Անգլիայի և Ֆրանսիայի իմպերիալիստական պլանների ձախողումն առկա յե, բայց այդ չի նշանակում, թե նրանք կդադարեցնեն պայքարը Բալկանյան պետությունների կողմնորոշման համար: Այդ պայքարն ուժեղանում և բորբոքվում ե:

---



ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Պատ. խմբագիր՝ Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Պատ. քարտուղար՝ Հ. ՍԱՐԳՍՅԱՆ



Սրբագրիչ՝ ՀԱՐ. ՓԱՐԻԿՅԱՆ

Գլավլիտի լիազոր Ջ—1086

Պատվեր՝ 253 տիրաժ 7218

Հանձնված է արտադրության 15/III 1940 թ.

Ստորագրված է տպագրության 22/III 1940 թ.

---

Հայկական ԽՍՀ Ժողկոմխորհին կից «Խ. Հ.»

Հրատարակչության տպարան, Երևան

ԲԱՐԵՆՑԻ ԾՈՎ
ՆՈՐՎԵԳԻԱ
ՇՎԵԴԻԱ
ՖԻՆԼԱՆԴԻԱ
ՊԵՑՍԱՄՈ
(ՊԵՉԵՆԳԱ)
ՌԻԲԱՉԻ Թ.ԿՂԶԻ
ՄՈՒՐՄԱՆՍԿ
ԿԻՐՈՎՍԿ
ԿՈՒՈԼՈՅԱՐՎԻ
ԿԱՆԴԱԼԱՔՇԱ
Կովդոզերո լիճ
Պյոզերո լիճ
ՏԻԿՇՈԶԵՐՈ Լ.
ՍՊԻՏԱԿ ԾՈՎ
ՈՒԽՏԱ
ԲՈՏՆԻԿԱԿԱՆ ԾՈՑ
ՈՒԼՈՒ
(ՈՒԼԵԱԲՈՐԳ)
ԿԱՅԱՆԱ
ԿԵՄ
ՏՈՒՆԳՈՒԴԱ
ՎԱԶԱ
(ՆԻԿՈԼԱՅՇՏԱԴ)
ՆՈՒՐՄԻՍ
ՌԵԲՈԼԻ
ՍԵԳՈԶԵՐՈ ԼԻՃ
ԿՈՒՕՊԻՕ
ԻՈԵՆՍՈՒՈՒ
ՊՈՐՈՍՈԶԵՐՈ
ՄԻԿԿԵԼԻ
(Ս. ՄԻԽԵԼ)
ՍՈՐՏԱՎԱԼԱ
(ՍԵՐԴՈԲՈԼ)
ՊԵՏՐՈԶԱՎՈԴՍԿ
ՕՆԵԳԱՅԻ ԼԻՃ
ՏՈՒՐԿՈՒ
(ԱԲՈ)
ՅԱԿԻՍԱԼՄԻ
(Կեքսհոլմ)
ՎԻՊՈՒՐԻ
(Վիբորգ)
ԽԱՆԿՈ
(Գանգե)
ՀԵԼՍԻՆԿԻ
(Հելսինգֆորս)
ԿՈՅՎԻՍՏՕ
(Բերկ-է)
Գոգլանդ կղ.
Լավանսաարի կղ.
ԼԱԴՈԳԱՅԻ ԼԻՃ
ՕԼՕՆԵՑ
ՖԻՆՆԱԿԱՆ ԾՈՑ
ՏԱԼԼԻՆ
(ՌԵՎԵԼ)
ԼԵՆԻՆԳՐԱԴ
ԷՍՏՈՆԻԱ
Մասշտաբ
0 25 50 75 100 կմ.

ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆՇԱՆՆԵՐ
Ֆինլանդիայից ԽՍՀՄ-ին անցնող տերիտորիան
այն տերիտորիան վոր Ֆինլանդիան կապալով է տալիս ԽՍՀՄ-ին
Հին սահմանը

